# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆԿԱԽՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԹՈՒՐՔԻՈՅ... "ՆՈՒԷՐ"Ը

Հայաստանի անկախութեան տօնակատարման դէմ ռամկավարները աւելի կանուխէն սիստեմաթիկ աշխատանքի լծուեցան այս տարի :

Օտար իշխանութիւններու տրուած «ժուռնալ»էն զատ, մամուլի մէջ յօդուածաշարքով ջանացին ապացուցանել, թէ Հայաստանի Հանրապետութիւնը ծնունդ առած է Թուրքերու պահանջով, ապա ուրեմն Մայիս 28ը Թուրքին տօնն է՝ Հայուն պարտադրուած : Եւ այս մասին քաղուածքներ ալ ըրին Դաշնակցական մտաւորականներէ եւ գործիչներէ :

Սովորութիւն չունինք մեր հակառակորդին կողմէ եղած ամբաստանութեան մը վրայէն լռութեամբ անցնելու :

Չենք պատասխաներ «Արեւ»ի զռեհիկ ածականներուն, կ'անդրադառնանք հարցին ըստ էութեան :

Նախ ճշդում մը : Ռամկավար մամուլին մոլութիւնն է խարդախութիւններ ընել : Մենք սակէ առաջ քանիցս բռնած ենք «Արեւ»ի օձիքէն : Անցեալ տարի հրատարակեցինք Մուշեղ Սերոբեանի նամակը, ուր ցոյց կը տրուէր գործուած խարդախութիւնը : «Արեւ» դաս մը առաւ եւ այլեւս Մուշեղ Սերոբեանին դիմելէ վախցաւ :

Այս տարի ապաւինած է օգնութեանը Հայաստանի Հանրապետութեան երկու վարչապետներուն՝ Ալ. Խատիսեանի եւ Ս. Վրացեանի «վկայութիւն»ներուն, հաստատելու համար, թէ հայ ժողովուրդը պատերազմներ մղած չէ իր հայրենիքի ազատութեան ու անկախութեան համար, այլ Թուրքիան է, որ պարտադրած է Հայերուն ունենալ անկախ Հայաստան :

Ս. Վրացեան Հայաստանի Հանրապետութեան նուիրուած գրքոյկ մը գրած է, իսկ 1928ին՝ փառաւոր, 548 մեծադիր էջերով «Հայաստանի Հանրապետութիւն» հատորը : Ալ. Խատիսեանի յուշերը «Հայրենիք» ամսագրի մէջ հրատարակուելէ ետք, 1930ին Աթէնքի մէջ տպագրուեցան «Հայաստանի Հանրապետութեան ծագումն ու զարգացումը» անունով :

Անմիջապէս ըսենք, որ Հայաստանի Հանրապետութեան պատմութեան նուիրուած ամէնէն մանրամասն ու լիակատար այս երկու գործերը տարիներէ ի վեր սպառած են ու կը սպասեն Բ. տպագրութեան : Սակայն դիւրութեամբ կարելի է գտնել այս գիրքերը հանրային կամ անհատական գրադարաններու մէջ, եւ կը բաւէ նիւթերու ցանկը աչքէ անցընել, համոզուելու համար, թէ այդ գիրքերը գրի առնուած են ներկայացնելու համար հայկ. բանակի, հայկ. պետութեան եւ առ հասարակ հայ ժողովուրդի մղած անհաւասար պայքարը ի խնդիր Ազատ եւ անկախ Հայաստանի :

Բայց ռամկավար խմբագիրը, որ ի պաշտօնէ դէմ է Հայաստանի անկախութեան ու կողմնակից ռուսական տիրապետութեան Հայաստանի վրայ, աշխատած է գտնել փաստեր, ցոյց տալու համար, թէ հայեւթուրք արիւնալի բախումներ տեղի ունեցած չեն Երզնկայէն, Տարօնէն, Վանէն մինչեւ Արարատեան դաշտը : Հէքիաթներ են Սարդարապատի, Ղարաքիլիսէի, Բաշ Աբարանի կռիւները, զօրավարներ Նազարբէգեանի, Սիլիկեանի, Դրոյի ռազմական կոչերը չինծու են ... ճիշդ չէ նաեւ հանգուցեալ Գարեգին արք. Յովսէփեանի վկայութիւնը, թէ ինք օրհնած է ռազմիկները եւ Ղեւոնդ Երէցի նման ճակատ գացած է :

Ըստ ռամկավար այլասերած խմբագրին, իր մեծ ընկերները՝ Միհրան Տամատեան, Արտակ Դարբինեան, Արշակ Չօպանեան, Վահան Թէքէեան անտեղեակ են եղեր, թէ գոյութիւն ունեցած է Հայաստանի Հանրապետութիւն, հայկական եռագոյն, հայկ. կառավարութիւն : Սուտ է, որ 1920ին, յաղթական մեծ պետութիւններու կարգին, յանուն Հայաստանի Հանրապետութեան, մեր ժողովուրդի ընտրեալագոյն զաւակներէն Աւետիս Ահարոնեան ստորագրած է Սեւրի դաշնագիրը, որով կը ճանչցուէր Միացեալ մեծ Հայաստանի մը իրաւական գոյութիւնը ... :

Եւ վերջապէս սուտ է ... որ Հայաստանի Հանրապետութեան վարչապետներէն Ալ. Խատիսեան այցելած է արտասահման : Մեր ժողովուրդը երբեք չի յիշեր այն խանդավառ ցոյցերը, որոնց տպաւորութեան տակ Թորգոմ արք. Գուշակեան պատրաստած է «Գոհաբանական մաղթանք վասն Հանրապետութեան ազգիս Հայոց» : Մինչեւ վերջերս Եգիպտոսի թեմի եկեղեցիներուն մէջ կը կարդացուէր այդ մաղթանքը մեծ հանդիսութեամբ : Սուտ է նաեւ, որ մարդիկ գտնուած են, որոնք Եռագոյնը դրոշմել տուած են իրենց բազուկին ու կուրծքին վրայ ... :

Այս բոլորը անճիշդ են, միակ ճշմարտութիւնը այն է, որ Թալէաթի կառավարութիւնը ջարդերէն ետք հոգեփոխութիւն ունեցած է եւ որոշած է Հայաստանի անկախութիւն շնորհել 1918 Մայիս 28ին ... : Եւ որովհետեւ հայ զինուորականներ, գործիչներ, յեղափոխականներ տրամադիր չէին անկախ ըլլալ, Վեհիպ փաշա վերջնագրով մը պայմանաժամ տըւած է եւ այս ձեւով ստեղծուեր է Հայաստանի Հանրապետութիւն, ըստ ցանկութեան Թուրքիոյ ...

Բայց մէկ կողմ ձգենք ծանծաղամիտ ռամկավար խմբագիրները, որոնք ընդունակ են ամէն յիմարութիւն դուրս տալու, բոլշեւիկներուն հաճելի երեւալու համար, եւ լրջօրէն անդրադառնանք Թուրքիոյ կատարած քաղաքական գործին Հայաստանի Հանրապետութեան ըստեղծման մէջ :

Նախ հաստատենք պատմական իրողութիւն մը, թէ Հայաստանի Հանրապետութիւնը եւ անոր շարունակութիւն Հայկական «Ռեսպուբլիկա»ն ծնունդ առին շնորհիւ Ռուսաստանի քայքայման :

Եթէ Ռուսաստան պարտուած ու քայքայուած չըլլար, գոյութիւն չէին ունենար Ֆինլանտիա, Պալթեան պետութիւններ, Լեհաստան, Չեխոսլովաքիա, Ուկրանիա, Հիւս. Կովկասի եւ Անդրկովկասի հանրապետութիւնները :

Թուրքիա, իր շահերէն թելադրուած, նոյնպէս կը ցանկար տեսնել Ռուսաստանի քայքայումը եւ անոր ու իր միջեւ պատուար պետութիւններու հաստատումը, իբրեւ նուազագոյն չարիք՝ խուսափելու համար մեծ չարիք Ռուսաստանէն, զոր կ'ուզէր տեսնել Հիւս. Կովկասի լեռներէն անդին նետուած :

Միջազգային այս կացութիւնը անցեալին ստեղծուեցաւ եւ վաղն ալ պիտի կրկնուի : Երբեք նշանակութիւն չունի հայութեան դէմ ըլլալը այդ կացութեան : Եթէ մենք յայտարարենք, թէ կ'ուզենք Ռուսին փէշին կապուած մնալ, միայն մեզի սպառնացող վտանգը կրնանք աւելցընել, փոխանակ նուազեցնելու :

Անդրադառնալով 1918ի դէպքերուն առանձին հարցեր են հայեւթուրք յարաբերութիւնները եւ կովկասեան պետութիւններու անկախութիւնը :

Թուրքերը, հետապնդելով հանդերձ Կովկասի անջատումը Ռուսաստանէն, ցանկութիւն չունէին տեսնելու Հայաստանի Հանրապետութիւնը : Բայց երբ տեսան հայկ. բանակին յամառ դիմադրութիւնը Արարատեան դաշտին մէջ, աւելի կանուխ Բագու կարենալ հասնելու համար տրամադիր եղան ճանչնալու Հայաստանի գոյութիւնը : Երկրորդ, Ալ. Խատիսեան իր յուշերուն մէջ մանրամասնօրէն կանգ կ'առնէ այն տեղեկութիւններուն վրայ, թէ տեսնելով, որ պատերազմը կը մօտենայ իր վերջաւորութեան եւ երրեակ զինակցութեան պարտութեան հետեւանքով Հայաստան մը անպայման պիտի ստեղծուի, Թուրքերը կը մտածէին խուսափիլ Մեծ Հայաստանէն, կողմնակից դառնալով փոքր Հայաստանի մը կազմութեան :

Գալով հայկական շրջանակներու վարանումին՝ անկախութիւն յայտարարելու, Հայեր դեռ կ'ուզէին պահել անդրկովկասեան երեք ազգերու միացեալ ճակատը յուսալով աւելի զօրաւոր դիմադրութիւն մը ընդդէմ Թուրք բանակին : Հայ պետական մարդոց մեծամասնութիւնը մտահոգ էր ճակատի պաշտպանութեամբ եւ չէր աճապարեր անկախութեան պաշտօնական յայտարարութեան համար :

Այս վարանումը, յապաղումը եւ մտահոգութիւնը մի՞թէ ապացոյց են, որ Հայերը եւ մանաւորապէս Դաշնակցութիւնը կողմնակից չէին Հայաստանի անկախութեան : Զարմիտ ու տգէտ ռամկավար խմբագիրը թող կարդայ նաեւ Սիմոն Վրացեանի «Հայաստանի Հանրապետութիւն» մեծադիր հատորին էջ 130ը, ուր, անկախութեան յայտարարութեան շուրջ Հայոց Ազգ. Խորհուրդին մէջ տարակարծութեան գոյութիւնը յիշելէ ետք, կ'աւելցնէ.

— «Այս հարցում էլ առաջին վճռական խօսք ասողը եղաւ Հ. Յ. Դաշնակցութիւնը, նրա չարքային ուժերը :

«Սէյմի լուծման օրն իսկ, Մայիս 26ի երեկոյեան, տեղի ունեցաւ Հ. Յ. Դաշնակցութեան Թիֆլիսի ներկայացուցչական ժողովի ու Թաղային կոմիտէների արտակարգ նիստը, ուր ընդունուեց հետեւեալ բանաձեւը. «Ի նկատի ունենալով այն, որ Անդր. Սէյմի ինքնացրումից եւ եւ Վրաստանի անկախութիւն յայտարարելուց յետոյ լուծուելու է Անդրկ. կառավարութիւնը, եւ հայ ժողովուրդը մընալու է բախտի բերմունքին՝ ներկայացուցչական ժողովը գտնում է անհրաժեշտ, որ Հայոց Ազգ. Խորհուրդը՝ ուժեղացնելով իր կազմը՝ անցնի գործելու հայութեան կենտրոնում՝ ստանձնելով կառավարական ֆունկցիաները, օժտուած դիկտատորական իրաւունքներով հայ կեանքի բոլոր երեւոյթների եւ գործերի նկատմամբ» :

«Շատ ճիշդ էր Վայրկեանի գնահատութիւնը — դէպի ինքնորոշում, դէպի ինքնակազմակերպում, դէպի հայրենի երկիր, ժողովրդի գիրկը» :

Մնացեալը ծանօթ է, Ազգ. Խորհուրդը Արամի գլխաւորութեամբ մեկնեցաւ Երեւան, ստեղծուեցաւ հայկական կառավարութիւն, զօրաւոր հայ բազուկ Թուրք բանակին դէմ : Իսկ, միւս կողմէ՝ շարունակուեցան դիւանագիտական բանակցութիւնները Պաթումէն ետք Պոլսոյ մէջ, Անդրկովկասի երեք հանրապետութիւններու պատուիրակութիւններուն եւ Թուրք կառավարութեան միջեւ : Հասաւ 1918 Նոյեմբեր 11ի զինադադարը, երբ Թուրքիա ստորագրեց իր պարտութիւնը եւ Հայաստան վերածնաւ : Միացեալ եւ Անկախ Հայաստանի յայտարարութիւնը կատարուեցաւ 1919 Մայիս 28ին, երբ արեւմտահայ երեսփոխաններ մուտք գործեցին Հայաստանի Խորհրդարանը :

Այս ամէնը չէ՞ն գիտեր ռամկավար խմբագիրները : Ոչ, գիտեն, լաւ տեղեակ են պատմական անցուդարձերուն :

Բայց վերէն ստացուած հրահանգներուն համաձայն, ամէն խեղաթիւրում կը փորձեն ջլատելու համար հայ ժողովուրդի թափը, պայքարը ի խնդիր Հայաստանի անկախութեան :

Ինչպէս անցեալները չեշտած էինք, վէճը անցեալ թուականի մը շուրջ չէ, այլ այսօրուան, մանաւանդ վաղուան մեծ պայքարին :

Սովետները իրենց արիւնոտ լուծը բռնութեամբ կը պահպանեն երկրին մէջ : Իսկ արտասահմանի քարոզչութեան համար պէտք ունին ստրկաբարոյ մտաւորականներու, որոնք փառաբանեն թշնամիի լուծը եւ հեգնեն հայ ժողովուրդի ազատութեան տենչը :

Պիտի գայ օրը, երբ հայութիւնը հաշիւ պիտի պահանջէ դասալիքներէն եւ դաւաճաններէն :

Իսկ Սփիւռքի հայութիւնը պարտաւոր է այսօր բարոյական մահուան դատապարտելու ներքին ցեցերը, որոնք, արտաքին թշնամիի հաշուին, հայկական միասնականութիւնը կը խանգարեն եւ յանդգնութիւնը ունին հեգնելու ազգային նուիրականութիւններ կամ ազգային տօնակատարութիւններ :

Գ. ԼԱԶԵԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԵՒ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ

## (ԼԵՒՈՆ ՇԱՆԹԻ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆԸ)

### ՄԱՍ ԱՌԱՋԻՆ

### ԳԼՈՒԽ Թ.

Չիչերինը վստահացրեց, որ կողմերի միջեւ զինուորական ընդհարումներ տեղի չեն ունենայ, որովհետեւ, իր համոզումով, հայ զինուորը չի կռուի ռուս զինուորի դէմ :

Անդրադառնալով Չիչերինի ենթադրութեան՝ ես նկատեցի, որ հայ զինուորը, տասնեակ տարիներ ռուս զինուորի հետ կողք-կողքի կռուելով Թուրքի դէմ, բնականաբար ռուս զինուորի մէջ տեսնում է իր հարազատին եւ փոխադարձաբար ռուս զինուորն էլ հայ զինուորի մէջ տեսնում է իր անդաւաճան ընկերոջը, ինչպէս այդ բազմաթիւ փաստերով ապացուցուել է համաշխարհային պատերազմի ընթացքին :

«Սակայն, դժբախտաբար, ընկեր Չիչերինը նկատի չի առնում այն հոգեփոխութիւնը, որ առաջ է եկել հայ զինուորի եւ ընդհանրապէս հայ ժողովրդի մէջ Հայաստանի անկախութեան հռչակումով : Հայ ժողովուրդը, ինչպէս եւ նրա ծոցից դուրս եկած քաջարի հայ զինուորը այնքան ամուր փարած է անթիւ զոհերի արեան գնով նոր ազատագրուած իր Հայրենիքին, որ նրա անկախութիւնը պաշտպանելու համար՝ հերոսաբար կը կռուի ոչ միայն ռուս զինուորի, այլեւ իր հարազատ հօր եւ եղբօր դէմ : Ազատ եւ անկախ ապրելու կամքը հայ ժողովրդի մէջ մարմին եւ արիւն է դարձել, եւ նրա այդ կամքն ու վճիռը հեշտութեամբ չի կարող խախտել եւ ոչ մի ուժ», — եզրակացրի ես :

Չիչերինը երեւում էր շատ ճնշուած ու մտահոգ : Գլուխը ցած թեքած՝ լուռ լըսում էր մեր արդարացի դիտողութիւնները :

Վերջապէս, մեր երկու ընկերների ըսպանութեան առթիւ, նա ցաւ յայտնելով՝ աւելացրեց, որ Խորհրդային կառավարութիւնը տեղեկութիւն չի ստացել այդ մասին :

Ինչ վերաբերում է 11րդ զօրաբանակի Զանգեզուր մտնելուն՝ դա հետեւանք է Խորհրդային Ազերբէջանի կառավարութեան դիմումին՝ Նախիջեւանի Թուրք եւ Թաթար ազգաբնակչութեան ֆիզիքական գոյութիւնը պաշտպանելու համար :

«Այնպէս որ, Կարմիր Բանակի զօրամասերի կողմից Զանգեզուրի ու Նախիջեւանի շրջանների գրաւումը ժամանակաւոր բնոյթ ունի եւ հայ-ազերբէջանեան սահմանների խնդիրը վերջնականապէս ճշդուելուց յետոյ վերջ կը գտնի : Այդ մասին անհրաժեշտ ցուցմունքներ են տրուած Խորհրդային կառավարութեան լիազօր պատուիրակ Լեգրանին», — հաւաստիացրեց Չիչերինը :

Այս բացատրութիւններն ու հաւաստիացումները, սակայն, ոչ գոհացուցիչ եւ ոչ էլ համոզիչ էին մեզ համար : Բայց ի՞նչ կարող էինք անել : Ուստի ծանր մտահոգութիւնների մէջ վերադարձանք տուն եւ սկսեցինք պատրաստութիւններ տեսնել՝ Մոսկուան թողնելու :

Մի երկու օր պէտք եղաւ վիզայի, տոմսակների եւ այլ խնդիրներ կարգադրելու համար : Եւ հազիւ Օգոստոս 10ին հնարաւոր եղաւ թողնել Մոսկուան : Այս անգամ մէկ օրից հասանք Ռոստով :

Ռոստովում բոլշեւիկ Ս. Լուկաշինից տեղեկացանք, որ Օգոստոս 10ին (Սեւրի դաշնագրի ստորագրման թուականը) Հայաստանի ներկայացուցիչներ՝ Ա. Ջամալեանի եւ Ա. Բաբալեանի ու Խորհրդային կառավարութեան լիազօր՝ Լեգրանի միջեւ Թիֆլիսում ստորագրուել է հաշտութեան ժամանակաւոր համաձայնագիր, որով՝ Խորհրդային Ռուսաստանի զօրամասերը գրաւման տակ էին պահելու Ղարաբաղի, Զանգեզուրի ու Նախիջեւանի շրջանները եւ Ղազախի գաւառի մի մասը :

Այդ անսպասելի տեղեկութիւնից, պատուիրակութեան անդամներս կատարելապէս շշմել էինք, թէ ինչպէս Հայաստանի կառավարութիւնը, որ չէր համաձայնւում մի ամիս առաջ Մոսկուայում շատ աւելի նպաստաւոր պայմաններով մեզ առաջարկուած համաձայնագիրը ստորագրել եւ առաջարկում էր նոր պահանջ ներկայացնել դաշտային Ղարաբաղի մասին, Օգոստոս 10ին համաձայնուել էր ստորագրելու այդ խայտառակ համաձայնագիրը :

ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ՏԷՐՏԷՐԵԱՆ

(24) (Շար.)

# ՎԱՀԱՆ ԹՕՇԻԿԵԱՆ

(Բ. եւ վերջին մաս)

Իրաւ է որ գրեթէ նոյնարմատ ծագում ենք ունեցած։ Վ. Թօշիկեանի նախահայրը Թերեւս Կեսարիոյ նոյն գիւղէն էր գաղթած ուր ես եմ ծներ, քանի որ ծնողքը կը պատմէին թէ «Թօշիկներ» կային գիւղին մէկ կողմը ուրկէ հեռացած են կանուխէն։ Ես ալ տէրտէրի թոռ՝ ան ալ։ Սա տարբերութեամբ որ մինչ մեր ժառանգական քահանայական տան վերջին Տէր Յակոբը վախճանած է երբ ես չկայի, եւ հայրս ալ երախայ, Վահան մեծցած, սնած ու կրթուած էր իր մեծ հօր, «տէտէ»ին՝ Գընալըի աւագերէց Տ. Դիոնէսիոս քահանային ձեռքին տակ։ Որով՝ ես կրօնական կապ չեմ տեսած, մինչ ինք, չափահասութենէն վերջն ալ քահանայական «շնորհ»ին տակ է մնացած (*)։

Խմբագրական ասպարէզին մէջ ես գրական խղճմտութեամբ կը փորձէի քալել, նախադասութիւններուն վրայ կը ճգնէի, քերթողական ու վիպական յաւակնութիւններ կը սնուցանէի, գրական ու գեղարուեստական քննադատութեանց մէջ կը մխրճուէի, քաղաքական ու ընկերային մարզանքներ կը կատարէի, ազգային կեանքի մէջ միշտ յարձակողականի վրայ, մինչ Վահան կը պահպանէր ու կը պաշտպանէր կղերն ու վարժապետը, տէրտէրն ու տիրացուն, վարդապետ ու եպիսկոպոս կը խնկարկէր, թաղականներու եւ աղաներու պսակ կը հիւսէր, հասարակ ձեռնարկներ կը փառաւորէր ըստ իր կարերուն։ Իսկ երբ ընդդիմախօսելու հարկադրուէր, իր խիստ եւ գրեթէ պարսաւագրական գրիչը կը գործէր ի սպաս այս կամ այն անձին, կամ խնդրին պաշտպանութեան։

Թօշիկեան իր դասընկերոջ Ռ. Պէրպէրեանի երրեակ նշանաբանէն — բարւոյն, ճշմարտին եւ գեղեցկին — ճշմարիտը գտած է քիչ մը խրթին, Գեղեցիկը սահմանափակած է կիներու դարպասին մէջ, իսկ ամուր փարած է Բարիին։ Որովհետեւ բարիով դատելն աւելի դիւրին է, հաճելի եւ օգտակար։

Աշակերտ Պէրպէրեանի եւ Եր. Տէր Անդրէասեանի, ունէր յարձակողական ու պաշտպանողական վարպետ դարձուածքներ, մերթ միջանկեալ այնպիսի երկարաբանութեամբ որ թրքաբանութեան մէջ կը մոլորէր։ Փորձ լրագրող սահմանափակ տեսողութեամբ եւ հմտութեան համեստ պաշարով։ Թանկագին ուժ օրաթերթի համար՝ թէեւ օր մը քաղաքական նիւթ մը չէ փորձած. — այս ալ իր արժանիքն է։

(*) Այս տողերը գրուած պահուն դեռ Արմենակ եղբայրս աշխարհական էր եւ յետոյ է որ, մեր ընտանեկան ժառանգութեան խզուած լարը վերցնելով՝ Աթէնքի մէջ քահանայացաւ եւ մեծ-հօր անունն առաւ Տ. Մեսրոպ։

Իր խմբագրական անխոնջ ուժը դեռ կը շարունակէ եւ պատնէշին վրայ կը մնայ իր «Նոր Լոյս»ով, թէեւ այս պատնէշը փլած ու նուազած ըլլայ։ Իր «Նոր Լոյս»ը կը շարունակէ իրեն սիրելի ճիւղը։ Տեսակ մը եկեղեցիի դաւիթ — ինչպէս պոլսահայ մամուլը ընդհանրապէս — ուր կնունք, հարսանիք, յուղարկաւորութիւն զիրար կը հրմշտկեն, ուր Վահան, կրնանք ըսել «Տէր Վահան» բոլորովին յարմար զգեստ ու օրհնութիւնը գիտէ արժանապէս ընծայել, համաձայն ակնկալուած «ժամուց»ին։

×

25 – 30 տարիներու բաժանումէ մը ետքը, հիմա Փարիզէն Պոլիս կ'երեւակայեմ թէ Վահան եղած է իր մեծ հօրը պէս ակնոցներու փայլին ետեւը կորսուած կմախք մը՝ Կանտիի հեռաւոր նմանութեամբ եւ սակայն չարժուն եւ խլրտուն, միշտ ծաղրածու ժպիտովն ու ակնարկով։

Կը հաշուեմ նաեւ որ Վահան օր մը 80–90 տարեկանին երբ պատեհութիւնն ունենայ իր «տէտէ»ին հանդիպելու, այդ բարեբարոյ ծերունին դրկարաց պիտի ընդառաջէ զայն գոչելով՝

— Ապրիս, սիրելի թոռնիկ, դուն իմ սուրբ գործս շարունակեցիր երկրի վրայ, ծառայեցիր մեր սուրբ եկեղեցիին, քու կատարած պսակներդ, մկրտութիւններդ եւ թաղումներդ հարիւրապատիկ աւելի են քան իմ կատարածներս ի խոր ծերութիւն։ Օրհնեա՛լ, եկեա՛լ յանուն Տեառն ...

Եւ պիտի փութայ, ակամայ, դրախտի կապալառու Ս. Պետրոսին, որ շնորհ ընէ իր թոռնիկին։

Չեմ գիտեր սակայն որ, մեր ցկեանս դռնապան Պետրոս Առաքեալ ձեռքը ցկեանս բանալիներուն պիտի երկարէ՞, թէ ուրիշ ճամբայ պիտի ցուցընէ, քանի որ Նորաժաման Վահան, իր ասպարէզին բերմամբ, կրնայ մեղապարտ մը արդարացուած, արդար մը դատափետած, սուրբ մը խաչած ու խաչագող մը պաշտպանած ըլլալ։

... Բայց ինչո՞ւ խառնենք անդենականը։ Բաւ են աստենականին չար իւր։

×

ՎԵՐՍՏԻՆ ՅԱՒԵԼՈՒԱԾ

(Իր մահուան առթիւ)

Իր պայքարներով կամ պաշտպանութիւններով ամբողջ կէս դար Պոլսոյ մեր հանրային կեանքին մէջ դեր մը կատարելէ ետքը, Վահան Թօշիկեան կը մեռնի ցանկալի Էջմիածինը ողջունելու ճամբուն վրայ իսկ։

Որչափ ալ յաճախ տարակարծիք, եւ սակայն պէտք է խոստովանիլ թէ Թօշիկեան որոշ անկեղծութեամբ ու հաւատքով կը գործէր, համոզուած մըն էր իր ուղղութեան մէջ եւ անկեղծ եկեղեցասէր։

Վերջին տարիները իր «Նոր Լոյս»ը անօրինակ հակասութիւն մը պարզեց խմբագրին անցեալի դատաստանով։ Համայնամէտ (քոմինիզան) գիծ մը որդեգրեց զարմացնելով բոլորս իր քաջութեանը համար, մենք որ զինքը կը ճանչնայինք քաղաքականապէս խուսափուկ եւ չափազանց երկչոտ։

«Խուսափուկ»ը ճիշդ բառն է կարծեմ զինքը բնորոշելու իր նոր մարզանքներուն առթիւ, քանի որ ան կ'ապաստանէր «կղերապետական» ծառուղիներու հովանիին տակ։

Տեղապահ Ասլանեանի բոլորանուէր պաշտպան՝ կ'երեւի կապեր հաստատեց Մայր-Աթոռին հետ որ այդ վստահամբաւ եկեղեցականին պաշտպան հանդիսացաւ գիտութեա՞մբ թէ անգիտութեամբ, չենք գիտեր։

Նաեւ, բարեհահամբաւ նոր պատրիարքին դէմ, անոր կարգ մը ձեռնարկներուն պատրուակով, յայտարարած «ճիհատը»՝ գռեհիկ աշխատակիցներու օժանդակութեամբ, արդեօք Էջմիածնի լուռ հաւանութեա՞մբ էր թէ ոչ։ Գաղտնիք։

Ամէն պարագայի մէջ գաղտնիք չէ որ Մայր-Աթոռը Պոլիս ղրկած հրահանգները ընդհանրապէս կ'ուղղէ եղեր Թօշիկեանի խողովակով եւ անոր հասցէին։ Նաեւ գաղտնիք չէ որ Էջմիածին ամբողջ պոլսահայութեան մէջ իբր սիրելի եւ հաւատարիմ որդի միայն Թօշիկեանը կը գտնէ՝ բացառիկ պատուով իր մօտ հրաւիրելու զայն ուրիշ մտաւորականի մը հետ՝ նոյնպէս Ասլանեանական։

Ինչ որ ալ ըլլայ, տխրալի է որ մարդ մը իր ուխտավայրին այնքան մօտիկը յեղակարծօրէն խզուի կեանքի թելէն։

Վաղեմի ընկերոջ մը այս մահը կը սգողուի մխիթարական այն շղարշով որ կը ծածկէ պատնէշին վրայ ինկող զինուորին մարմինը։

Այսպէս, Թօշիկեան երբ իր երկարամեայ հետեւողական ուղիին փառքն ու պսակը ստանալու համար կը սուրար դէպի Ս. Աթոռ, յանկարծ կը շիջի իր կանթեղին պլպլուն լոյսը՝ Լուսաւորչի Կանթեղին լոյսէն հաղորդուելու թրթռուն ցանկութեան րոպէին իսկ։

ՅԱԿՈԲ ՏԷՐ ՅԱԿՈԲԵԱՆ

# Ի՞ՆՉՊԷՍ ԿՆՔՈՒԵՑԱՒ ՍԹԱԼԻՆ-ՀԻԹԼԷՐ ԴԱՇԻՆՔԸ

(ՌԻՊՊԸՆԹՐՈՓԻ ՅՈՒՇԵՐԸ)

●

ԽՄԲ.— Առաջին մասը տես Յառաջ 25 Յունիս.

Քաղաքավարական փոխանակութիւններէ ետք, սեղանի մը շուրջ բոլորուեցանք Սթալին, Մոլոթով, Կոմս Շուլըն-պուրկ եւ ես։ Ներկայ էին նաեւ մեր թարգմանը, դեսպանատան խորհրդական Հիլկեր, որ շատ լաւ ծանօթ էր Ռուսիոյ և Ռուսերուն, և ռուս թարգման Փաւլով, դեղին մազերով երիտասարդ մը, այս վերջինը կը թուէր թէ Սթալինի վստահութիւնը կը գրաւէր։

Սկսելու համար, բացատրեցի Գերմանիոյ ցանկութիւնը, գերմանեւռուս յարաբերութիւնները նոր հիմքի մը վրայ դնելու եւ ներդաշնակելու մեր երկու երկիրներուն շահերը։ Մենք կ'ուզէինք տեւական յարաբերութիւններ հաստատել Ռուսիոյ հետ։ Դիտել տուի թէ անցեալ դարնան Սթալինի արտասանած ճառն ալ այդպիսի տեսակէտներ կը յայտնէին։ Սթալին դարձաւ Մոլոթովին եւ խնդրեց որ նախ ինք պատասխանէ։ Մոլոթով խնդրեց Սթալինէն որ ինք ստանձնէ, որովհետեւ աւելի իրաւասու էր։

Սթալին խօսեցաւ։ Առանց դարձուածքներու, յստակ եւ հակիրճ, պարզեց իր տեսակէտը։ Ինծի թուեցաւ թէ, ան ալ կը փափաքէր հասկացողութեան մը գալ Գերմանիոյ հետ եւ արդար լուծում մը գտնել։ Պատկերաւոր բացատրութիւն մըն ալ գործածեց «տարիներէ ի վեր Գերմանները եւ Ռուսերը փոխադարձաբար իրար կը ջրէին աղբաջուրի դոյլերով», սակայն այդ չի նշանակեր թէ չենք կրնար իրար հասկնալ։ Ան անցեալ գարնան խօսած էր իր ճառը հասկցնելու համար իր կամքը Գերմանիոյ հետ մերձեցումի մը մասին, մենք շատ լաւ հասկցած էինք զինք։

Սթալինի պատասխանը այնքան հաստատական էր որ, առաջին տեսակցութենէն ետք, ուր յայտնի եղաւ թէ երկու կողմերն ալ տրամադիր էին ոչ-յարձակման դաշինք մը կնքելու, անցանք փոխադարձ շահերու սահմանումին, եւ գերման եւ լեհ տագնապին քննութեան։ Ռուսերը մասնաւորաբար վարպետօրդի դիւանագէտներ կը նկատուին, ասով մէկտեղ նպաստաւոր կլիմայի մը տակ տեղի կ'ունենային բանակցութիւնները։ Գծուեցաւ Գերմանիոյ եւ Խ. Միութեան միջեւ գտնուած երկիրներու փոխադարձ ազդեցութեանց սահմանները։ Ֆինլանտան, Պալթեան երկիրներու ամէնէն մեծ մասը եւ Պեսարապիան կ'իյնային ռուսական ազդեցութեան շրջանին մէջ, գերման եւ լեհ բախումի մը պարագային — ստեղծուած վիճակը պէտք էր նկատի առնել այս հեռանկարը — որով համաձայնեցանք գծել սահմանագիծ մը։

Առաջին տեսակցութեան առեն Սթալին ճշդած էր թէ ինք կ'ուզէր որ Ռուսիան շահերու շրջաններ ունենայ։ (Շահակից պետութիւնը կը բանակցի միմիայն այն երկիրներու կառավարութեանց հետ որոնք իր ազդեցութեան շրջանակին մէջ են, իր ընկերակիցը պաշտօնապէս կը հրաժարի հետաքրքրուելէ)։ Այս առիթով Սթալին յայտարարեց թէ ինք նկատի չունէր փոխելու այս Պետութեանց քաղաքական կազմը։ Ի պատասխան իր հարցումին ազդեցութեանց շրջանակի բաժանման մասին, շեշտեցի թէ Լեհերու յարձակողական դիրքը հետզհետէ կը սաստկանար։ Որով կը կարծէի որ եթէ ընդհարում մը տեղի ունենար, աւելի լաւ կ'ըլլար առաջ–

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԵՒ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԲԱՆԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ

(ԼԵՒՈՆ ՇԱՆԹԻ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆԸ)

●

## ՄԱՍ ԱՌԱՋԻՆ

### ԳԼՈՒԽ Թ.

Այդ առթիւ դիմում կատարեց Շրջանային Գործկոմի քարտուղար Ս. Լուկաշինին, որպէս զի նրանց արտօնութիւն տրուի մեկնելու Հայաստան իրենց ունեցած շարժական ամբողջ գոյքերով։

Ս. Լուկաշինը սիրով ընդառաջեց մեր դիմումին եւ համաձայնուեց արտօնել Սմբ. Եղիազարեանի եւ Ա. Մելիք Վարդանեանի մեկնումը, բայց բուռն կերպով առարկեց Գր. Զուրաբին արտօնութիւն տալու դէմ։ Հակառակութեան պատճառը նա վերագրեց իր սրտցաւութեան՝ Նորաստեղծ Հայաստանի Հանրապետութեան հանդէպ։

Վրդովուած կերպով Լուկաշինը պատմեց, որ Գր. Զուրաբը, Հայաստանից վերադառնալուց յետոյ, բազմամարդ մի ժողովում, կարմիրներուն դիւր գալու նպատակով, անճիշդ եւ վարկաբեկիչ տեղեկութիւններ էր հաղորդել Հայաստանի կառավարութեան եւ պետական կառուցուածքի մասին։ Վերջը դայրացած աւելացրեց. «Ի՞նչպէս կարելի է այդպիսի անպիտան եւ երկերեսանի անհատին տանել Հայաստան։ Ի՞նչ օգուտ կարող էք սպասել այդպիսի անձնաւորութիւններից»։

Ի վերջոյ, զիջելով իմ պնդումներին, նա համաձայնուեց մեկնելու արտօնութիւն տալ նաեւ Գր. Զուրաբին՝ նրա ապագայ վնասակար արարքների ամբողջ պատասխանատուութիւնը թողնելով իմ վրայ։

Եւ իրօք, Լուկաշինի առողջ բնազդը չէր խաբել նրան։ Գր. Զուրաբը հետագայում միշտ էլ մնաց երկդիմի դիրքում, թէ մինչեւ Հայաստանի խորհրդայնացումը եւ թէ խորհրդայնացումից յետոյ։ Նրա անձի հանդէպ վստահութիւն չունէին ոչ Դաշնակցականները եւ ոչ էլ բոլշեւիկները. երկու կողմերի համար էլ նա անհարազատ մէկն էր։

Լուկաշինի հետ ունեցածս հանդիպումներից մէկին ներկայ էր նրա երիտասարդ համայնավար ընկերներից մէկը, ծագումով Հրեայ, որ առանձնապէս հետաքրքրւում էր Հայաստանի ռազմական ուժերի քանակով ու կարողութեամբ, ի մտի ունենալով, ի հարկէ, Հայաստանը խորհրդայնացնելու հնարաւորութիւնը։ Կռահելով նրա մտադրութիւնը եւ ձգտելով սանձել միամիտ երիտասարդի ախորժակը՝ յայտնեցի, որ Հայաստանը փոքրաթիւ յատուկ զօրամասեր ունի, որոնց նշանաբանն է՝ «Մահ կամ ազատութիւն», եւ դրանք կոչւում են՝ «Մաուզերիստների մահուան գնդեր»։ Թէեւ այդ զօրամասերի թիւը յիսուն հազարի է հասնում բայց նրանցից ամէն մէկը կարող է դէմ դնել յիսուն հոգի կարմիր բանակայինի։

Միամիտ երիտասարդը զարմանքով դիմեց Լուկաշինին՝ ստուգելու համար իր յայտարարութեան ճշդութիւնը։ Վերջինս ամենայն լրջութեամբ ու սառնասիրտ կերպով հաստատեց իմ ասածները՝ սառը ջուր լցնելով երիտասարդ ռազմավարի բորբոքուած երեւակայութեան վրայ։

Ռոստովի մեր ակամայ սպասումի ընթացքին հանդիպումներ ունեցանք հայ համայնքի տարբեր խաւերի ու շրջանի հայ գիւղացիութեան հետ։ Բոլորն էլ, անխտիր, դժգոհ էին բոլշեւիկների հաստատած վարչակարգից եւ ցանկութիւն ունէին օր առաջ ներգաղթել Հայաստան։ Առանձնապէս շտապում էր Նոր Նախիջեւանի շրջանի հայ գիւղացիութիւնը, որ պատրաստ էր միլիոնների արժէք ունեցող իր անշարժ գոյքերը թողնել տեղում եւ ներգաղթել Հայաստան իր շարժական գոյքերով միայն։ Գիւղացիութեան ցանկութիւնն էր տեղափոխուել Ալաշկերտի հովտում, որի հետ ծանօթացել էին պատերազմի ընթացքին եւ որի մշակելի հողերը մօտաւորապէս նմանեցնում էին Դոնի շրջանում իրենց ունեցած բարեբեր հողերին։

Պատուիրակութեան անդամներս բոլորին վստահեցնում էինք, որ խորհրդային իշխանութիւնը պատրաստ է Ռուսաստանում ապրող բոլոր Հայերին ճանաչել Հայաստանի քաղաքացիներ եւ թոյլատրել նրանց, որ ներգաղթեն Հայաստան իրենց ամբողջ շարժական ունեցուածքով։ Յորդորում էինք միայն չշտապել ու սպասել, մինչեւ որ որոշուեն Հայաստանի վերջնական սահմանները, որպէսզի ըստ այնմ կարգադրուի սփիւռքի հայ զանգուածների ներգաղթի խնդիրը, որ կապուած էր մեծ ծախսերի հետ։

Պատուիրակութիւնս Ռոստովից մեկնելուց առաջ կիսապաշտօնական ձեւով Լուկաշինը ինձ յայտնեց, որ Հայաստանի Հանրապետութեան Ռոստովի հիւպատոս Գրիգոր Զալխուշեանը չարաշահում է տեղի հայութիւնը եւ անհաշիւ ու խոշոր գումարներ է վերցնում Հայաստանի քաղաքացիութեան վկայականներ տալու պատրուակով։

ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ՏԷՐՏԷՐԵԱՆ

(26) (Շար.)

